Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 3 ՓԵՏՐՎԱՐ 1959

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։*



# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԵՎ ՏԵՂԱԿԱՆ ՍՈՎԵՏՆԵՐԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

## Լ. ՀՈՎՍԵՓՅԱՆ

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության Նախագահի տեղակալ

*Այս տարվա մարտի 15-ին տեղի են ունենալու Հայկական ՍՍՌ Գերագույն և տեղական Սովետների ընտրությունները։*

*Մեր ռեսպուբլիկայի աշխատավորները այդ ընտրությունները դիմավորում են իրենց ստեղծագործ ուժերի հսկայական վերելքի պայմաններում։*

*Գերագույն և տեղական Սովետների ընտրությունների նախապատրաստությունը կատարվում է ՍՄԿՊ XXI արտահերթ համագումարի որոշումների լիակատար իրագործման համար մղվող պայքարի լոզունգների ներքո։*

*Նախընտրական կամպանիայի այս օրերին մեր ագիտատորների խնդիրն է՝ ընտրողների շրջանում լայնորեն ագիտացիոն-*

բացատրական աշխատանք ծավալել։ Ագիտացիայի հիմնական բովանդակությունը պետք է լինի Կոմունիստական պարտիայի ներքին ու արտաքին քաղաքականության խոր մեկնաբանումը, յուրաքանչյուր ձեռնարկության, կոլտնտեսության, սովխոզի կողմից ժողովրդա-տնտեսական պլանները կատարելու, ինչպես նաև կոմունիստական հասարակարգի կառուցման գործում նորանոր հաջողություններ ձեռք բերելու համար աշխատավորներին մոբիլիզացնելը, որպեսզի բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ պատմական կարճ ժամանակաշրջանում հասնենք և անցնենք կապիտալիզմի առավել զարգացած երկրին՝ ԱՄՆ-ին։

Սովետական պետությունը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, նախորդ ընտրություններից հետո ընկած շրջանում խոշոր միջոցառումներ է իրականացրել երկրի ներքին և արտաքին քաղաքականության ուղղությամբ։ Ապահովված է արդյունաբերական արտադրության հետագա պրոգրեսը, անհրաժեշտ միջոցներ են ձեռնարկված գյուղատնտեսության շեշտակի վերելքի համար։ Արմատապես վերակառուցված է արդյունաբերության և շինարարության կառավարումը։



Այս ամենը հսկայական հնարավորություններ են տվել մեր սոցիալիստական երկրի արտադրողական ուժերի աճման համար և է՛լ ավելի է ծավալվել սովետական մարդկանց ստեղծագործական նախաձեռնությունը։

Վերջին մեկուկես-երկու տարիներին մեր երկրի աննախընթաց առաջընթացը նշանավորվեց գիտության և տեխնիկայի բնագավառում վիթխարի պատմական նշանակություն ունեցող հաղթանակով։ Սովետական գիտնականները, ինժեներները, բանվորները ստեղծեցին և տիեզերք բաց թողեցին երկրի արհեստական արբանյակներ և տիեզերական հրթիռ։

Գերագույն Սովետի, ինչպես նաև աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրությունները անց են կացվում ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքով, գաղտնի քվեարկությամբ։ Սովետական օրենսդրությունը քաղաքացիներին ընձեռում է ընտրական իրավունքների լիակատար ազատություն՝ անկախ նրանց ռասսայական կամ ազգային պատկանելիությունից, հավատից, սոցիալական ծագումից, գույքային դրությունից և անցյալ գործունեությունից։





Քաղաքացիների ընդհանուր քաղաքական հավասարությունը սովետական դեմոկրատիայի մեծագույն նվաճումն էր, որը հնարավոր դարձավ միայն Հոկտեմբերյան ռևոլյուցիայի շնորհիվ, սոցիալիստական հասարակարգի շնորհիվ, որը բացառում է մարդու կողմից մարդու շահագործումը։

Սովետական ընտրական սիստեմը ամենադեմոկրատականն է աշխարհում, որը լիովին ապահովում է բոլոր ընտրողների ազատությունը, ինչպես պետական իշխանության բարձրագույն օրգանների, այնպես էլ աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրությունների ժամանակ։ Մեր ընտրությունները իրոք դեմոկրատական, իրոք ազատ են։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան մարդկության պատմության մեջ առաջին անգամ պետական իշխանությունը ամբողջովին հանձնեց ժողովրդին՝ պատմության իսկական կերտողին, նյութական բարիքների և կուլտուրական արժեքների իսկական ստեղծողին։

Ընտրական կամպանիան անցկացնելու գործում մեծ նշանակություն ունի դեպուտատության թեկնածուների առաջադրումը։ Սովետների ընտրությունների վերաբերյալ



կանոնադրությամբ թեկնածուներ առաջադրելու իրավունք է վերապահված հասարակական կազմակերպություններին և աշխատավորների ընկերություններին, պարտիական կազմակերպություններին, արհեստակցական միություններին, կոոպերատիվ, երիտասարդական կազմակերպություններին, կուլտուրական և տեխնիկական ընկերություններին։

Աշխատավորների ընդհանուր ժողովներում դեպուտատության թեկնածուների լայն և համակողմանի քննարկումը նպաստում է Գերագույն և տեղական Սովետներում իրոք արժանավոր մարդկանց առաջադրելուն և ընտրելուն, մարդիկ, որոնք վայելում են իրենց ընտրողների վստահությունը, արտահայտում են նրանց շահերը։

Մեր երկրում չկան հակամարտ դասակարգեր։ Մենք ունենք մի միասնական պարտիա, որն արտահայտում է ողջ սովետական ժողովրդի շահերը և հանդիսանում է նրա ավանգարդը՝ կոմունիստական հասարակարգի կառուցման համար մղվող պայքարում։

Սովետական Միության Կոմունիստական պարտիան անխզելիորեն կապված է ժողովրդի հետ և վայելում է նրա վստահությու-

նըն ու համակրանքը։ Կոմունիստական պարտիան ընտրությունների ժամանակ հանդես է գալիս անպարտիականների հետ մի միասնական բլոկ կազմած։ Այդ բլոկը պարտիայի ամբողջ քաղաքականության, մեր երկրի կառավարման գործում նրա ունեցած ողջ պրակտիկ գործունեության ուղղակի արդյունքն է։

Ինչպես և բոլոր նախորդ ընտրությունների ժամանակ, այս անգամ ևս հայ ժողովուրդը Գերագույն և տեղական Սովետներ կուղարկի իր լավագույն զավակներին՝ կոմունիստների և անպարտիականների բլոկի արժանավոր թեկնածուներին։

Նախընտրական նախապատրաստություններ գործում այժմ վճռականը ագիտացիոն-մասսայական և կազմակերպչական-տեխնիկական աշխատանքն է։

Բնակչությանը սոցիալիստական շինարարության հաջողությունների հետ ծանոթացնելիս ագիտատորները պետք է ժողովրդին ցույց տան մեր երկրի զարգացման այն հոյակապ հեռանկարները, որ նշել է ՍՄԿՊ XXI արտահերթ համագումարը առաջիկա յոթ տարիների համար։ Միանգամայն մատչելի, յուրաքանչյուր ունկնդրի համար հասկանալի ձևով պետք է պատմել այն մասին, որ ՍՍՌՄ



ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը նախատեսում է արդյունաբերության վճռական ճյուղերի արագ աճ, գյուղատնտեսության հետագա վերելք, նյութական բարիքների առատության ստեղծում, սովետական ժողովրդի կենսամակարդակի զգալի բարձրացում։

Ընտրություններին նախապատրաստվելու ժամանակ պարտիական, սովետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների քաղաքական աշխատանքը պետք է նպաստի աշխատավորներին մոբիլիզացնելու գործին, որպեսզի յուրաքանչյուր ձեռնարկություն, սովխոզ, կոլտնտեսություն պայքարի ժողովրդատնտեսական պլանների կատարման համար, պետք է բանվորներին, կոլտնտեսականներին, ինտելիգենցիային ոտքի հանի կոմունիստական շինարարության գործում նորանոր նվաճումներ ձեռք բերելու համար։

Պարտիական, սովետական կազմակերպությունների խնդիրն է լիովին օգտագործել աշխատավորների նախաձեռնությունը պետական և տնտեսական աշխատանքը բարելավելու, սոցիալիստական մրցություն ծավալելու համար, ինչպես նաև զգայուն կերպով ունկնդրել սովետական, տնտեսական

մարմինների գործունեությունը բարելավելու ուղղությամբ աշխատավորների արած առաջարկներին, պաշտպանել նրանց առողջ քննադատությունը։

Ընտրողների շրջանում տարվող ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքի կենտրոնը պետք է լինի ընտրական տեղամասը։ Տեղամասի ագիտպունկտերում պետք է կանոնավոր կերպով անցկացնել կուլտուր-մասսայական միջոցառումներ, զրույցներ, զեկուցումներ, դասախոսություններ, կոնսուլտացիաներ, հարց ու պատասխանի երեկոներ, ինչպես նաև անհատական զրույցներ ընտրողների հետ։ Անհրաժեշտ է հասնել այն բանին, որպեսզի ընտրողների ոչ մի դիտողություն, ոչ մի գործնական առաջարկ անուշադրության չմատնվի։

Պարտիական, սովետական մարմինները պետք է վերահսկողություն սահմանեն ընտրողների արած առաջարկները և քննադատական դիտողությունները կատարելու նկատմամբ։ Պետք է խստորեն հետևեն, որպեսզի սովետական դեմոկրատիայի սկզբունքների խախտումներ չլինեն, անշեղորեն պահպանվեն ընտրությունների մասին Կանոնադրության պահանջները։

Հայաստանի աշխատավորները Գերագույն



Սովետի և աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրությունները դիմավորում են հարազատ Կոմունիստական պարտիայի շուրջը սերտորեն համախմբված։ Այժմ բոլորը գիտեն, թե որքան մեծ են մեր հաջողությունները, որոնք ձեռք են բերվել մեր կյանքի բոլոր բնագավառներում Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ։ Այդ հաջողությունները համոզիչ կերպով ցույց են տալիս, որ մեր պարտիայի խոսքը և գործը միմյանցից չեն տարբերվում, որ նա գիտի լենինյան ձևով, ստեղծագործական լայն թափով կազմակերպել իր առջև կանգնած խնդիրների կատարումը։ Սովետական ժողովուրդը սեփական փորձի վրա համոզվեց, որ Կոմունիստական պարտիան իր արմատական շահերի և հույսերի իսկական արտահայտողն է։ Յուրաքանչյուր կոմունիստի, ագիտատորի, պրոպագանդիստի պարտքն է ամեն ինչ անել, որ ընտրական կամպանիայի ընթացքում ընդարձակի կապը մասսաների հետ, է՛լ ավելի ամրապնդի աշխատավորների վստահությունը պարտիայի նկատմամբ, մոբիլիզացնի բանվորներին, կոլտնտեսականներին և ինտելիգենցիային կենսագործելու ՍՄԿՊ XXI արտահերթ համագումարի որոշումները։

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԶԻՆՎԱԾ ՈՒԺԵՐԻ 41 ՏԱՐԻՆ

Ա. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ, Մ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Վ. Ի. Լենինի և Կոմունիստական պարտիայի կողմից ստեղծված, բազմաթիվ մարտերում կոփված, հաղթանակների դրոշներով պսակված մեր փառապանծ Սովետական Բանակը և Ռազմա-Ծովային Նավատորմը 41 տարի կանգնած են մեր մեծ Հայրենիքի պաշտպանության դիրքերում։

Սովետական ժողովրդի հետ միասին, այդ պանծալի տարեդարձը տոնում են նաև սոցիալիստական լագերի բոլոր երկրների ժողովուրդները, մեր արտասահմանյան բազմաթիվ բարեկամները։

Սովետական Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի պատմությունը սերտորեն կապված է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի և նրա շնորհիվ ստեղծված Սովետական պետության պատմության հետ։



Սովետական Զինված Ուժերը ստեղծվեցին մեր երկրի համար ծանր պայմաններում, երբ իմպերիալիստական գիշատիչները ներքին հակառևոլյուցիոն ուժերի հետ միասին ձգտում էին խեղդել նորաստեղծ երիտասարդ սոցիալիստական պետությունը։

1918 թվականի հունվարի 28-ին ժողովրդական Կոմիսարների Սովետը Վ. Ի. Լենինի ստորագրությամբ դեկրետ հրատարակեց բանվորա-գյուղացիական Կարմիր Բանակ, իսկ փետրվարի 14-ին Ռազմա-Ծովային Կարմիր Նավատորմ ստեղծելու մասին։

Սովետական Բանակի ստեղծման օրերին մեր Հայրենիքին ահավոր վտանգ էր սպառնում կայսերական Գերմանիան, որը պատերազմ սկսելով ձգտում էր զավթել մեր երկիրը և ստրկացնել այն։

Օգտվելով Տրոցկու դավաճանությունից թշնամին արդեն մոտեցել էր Նարվա և Պսկով քաղաքներին։ Սովետական իշխանությանը մահացու վտանգ էր սպառնում։

Չնայած այն բանին, որ երիտասարդ Սոցիալիստական պետությունը չուներ փորձված հրամանատարներ, անհրաժեշտ քանակությամբ զենք, զինամթերք, հանդերձանք և պարեն, չնայած թշնամու ուժերի գերակշռությանը, այնուամենայնիվ Սովետա-

կան Բանակը 1918 թվականի փետրվարի 23-ին դեպի Պետրոգրադ շարժվող Գերմանական զավթիչներին առաջին խորտակիչ հարվածը հասցրեց Նարվայի և Պսկովի տակ։ Այդ հաղթանակը ցույց տվեց, որ ռևոլյուցիոն պաթոսով լեցուն աշխատավորական զանգվածները ընդունակ են կրծքով պաշտպանելու իրենց ազատությունը, իրենց Սոցիալիստական Հայրենիքը։ Մեծ Լենինի առաջարկությամբ փետրվարի 23-ը հայտարարվեց բանվորա-գյուղացիական Կարմիր Բանակի և Ռազմա-Ծովային նավատորմի ստեղծման օր։

1918—1921 թվականներին մեր երկիրը, նրա զինված ուժերը, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, ջախջախեցին արտաքին և ներքին թշնամիների երեք արշավանքները, Սովետական Բանակը ջախջախեց Կոլչակին, Դենիկինին, Վրանգելին, սպիտակ լեհերին, անգլո-ամերիկյան զորքերին և տարավ համաշխարհային պատմական հաղթանակ՝ միջազգային կապիտալիզմի դեմ։

Քաղաքացիական պատերազմի ծանր օրերին մեր հաղթանակների անմիջական կազմակերպիչն ու ոգեշնչողը եղել է Կոմունիստական պարտիան, այդ օրերին պարտիայի



հազարավոր անդամներ հերոսաբար զոհվեցին ճակատամարտերում։

Զինված ուժերի, ամբողջ աշխատավոր ժողովրդի պայքարի ոգին մեծ Լենինն էր։ Նա ղեկավարում էր երկրի տնտեսությունը, ներքին և արտաքին քաղաքականությունը, ղեկավարում էր մեր բանակի ռազմական գործողությունը։ Նրա ելույթները, նրա բոցաշունչ խոսքերը ոգևորում էր բոլորին, պայքարի մղում նրանց հանուն նոր կյանքի, հանուն Սովետական իշխանության վերջնական հաղթանակի։

Սովետական ժողովրդին, նրա մղած արդարացի ազատագրական պայքարում լայն աջակցություն էր ցույց տալիս միջազգային բանվոր դասակարգը։ Երբ իմպերիալիստները ձեռք էին բարձրացնում մեր երկրի վրա, նրանք հանդիպում էին սեփական բանվոր դասակարգի ուժեղ դիմադրությանը։ Այդ ժամանակաշրջանում Կարմիր Բանակի շարքերում մարտնչում էին հազարավոր հունգարացիներ, չեխեր, չինացիներ, լեհեր, կորեացիներ և շատ ուրիշ ժողովուրդների ներկայացուցիչներ։

Քաղաքացիական պատերազմը ավարտվեց Սովետական երիտասարդ պետության

ու նրա Զինված Ուժերի փայլուն հաղթանակով, միջազգային իմպերիալիզմի ծանր պարտությամբ:

Քաղաքացիական պատերազմից հետո մեր երկիրը ձեռնամուխ եղավ քայքայված տնտեսության վերականգնմանը: Խաղաղ շինարարության տարիներին պարտիան չէր մոռանում Վ. Ի. Լենինի այն ցուցումը, որ անհրաժեշտ է աչքի լույսի պես պահպանել մեր զինված ուժերը, մշտական հոգ տանել նրանց սպառազինման մասին և զգոն լինել թշնամու նկատմամբ:

Երկրի պաշտպանության հետագա ամրապնդման համար հսկայական դեր խաղաց ինդուստրացումը:

Շնորհիվ պարտիայի կողմից ձեռք առնված միջոցառումների, 1930 թվականի համեմատությամբ, 1939 թվականին բանակում ինքնաթիռների քանակը ավելացավ 6,5 անգամ, տանկերինը՝ 43 անգամ, հրանոթներինը՝ մոտ 7 անգամ, հակատանկային հրանոթներինը՝ 70 անգամ, գնդացիրներինը՝ 5 անգամ: Երկրի բարձրագույն և միջնակարգ ռազմական հաստատություններում պատրաստվում էին հազարավոր հրամանատարներ, քաղաքական աշխատողներ և մասնագետներ:



1938 թվականին միջազգային դրությունը նորից սրվեց: Ֆաշիստական Գերմանիան զենքի ուժով ձգտում էր համաշխարհային տիրապետության: Գործի էր դրվել գերմանո-իտալո-ճապոնական ռազմական բլոկը՝ «Հակակոմինտերնյան պակտ» անվան տակ:

Իմպերիալիստների դրդմամբ միլիտարիստական Ճապոնիան հարձակվեց Սովետական Միության վրա՝ Հեռավոր Արևելքում, Խասան լճի շրջանում, իսկ 1939 թվականին Խալխին-Գոլի շրջանում:

Սովետական Բանակը պատվով կատարեց իր պարտքը Հայրենիքի հանդեպ, նա գլխովին ջախջախեց ճապոնական զավթիչներին և դուրս շպրտեց նրանց ինչպես մեր Հայրենիքի, այնպես էլ մեր դաշնակից ՄԺՌ-ի տերիտորիայից:

1941 թվականի հունիսի 22-ին ֆաշիստական Գերմանիան ուխտադրուժ խախտելով իրար վրա չհարձակվելու Սովետա-Գերմանական պայմանագիրը, հարձակվեց մեր երկրի վրա: Այդ պատերազմում հիտլերյան Գերմանիան հենվում էր ամբողջ Եվրոպայում իր զավթաց էկոնոմիկայի վրա: Նենգ ու դաժան թշնամին պատերազմի սկզբում կարծում էր թե ինքը թեթև հաղթանակ կտանի Սովետական ժողովրդի դեմ ինչպիսին

նա ձեռք էր բերել Արևմտյան Եվրոպայում։ Սակայն նա չարաչար սխալվեց։ Իրենց սիրասուն Հայրենիքի ազատության ու անկախության համար ոտքի ելան ՍՍՌՄ բոլոր ժողովուրդները։ Անմահ հերոսության փայլուն օրինակներ ցույց տվեցին հերոս քաղաքներ Լենինգրադի, Օդեսայի, Սևաստոպոլի և Մոսկվայի պաշտպանները։ Երկար ժամանակ թշնամու թիկունքում արիաբար մարտնչում էին պարտիզանները։

Սովետական Բանակը կատաղի մարտերում արյունաքամ էր անում թշնամուն, ծանր կորուստներ պատճառելով նրան։

Մոսկվայի տակ Սովետական զորքերի հարձակումը ետ շպրտեց թշնամուն 400 կիլոմետր, ազատագրելով հազարավոր քաղաքներ և բնակավայրեր։ Ֆաշիստական զորքերը կրեցին իրենց առաջին պարտությունը երկրորդ համաշխարհային պատերազմում։

1942 թվականին օգտվելով երկրորդ ռազմաճակատի բացակայությունից ֆաշիստական Գերմանիան մոբիլիզացիայի ենթարկեց իր բոլոր ուժերը և երկրի Հարավային մասում անցավ նոր հարձակման։

1942 թվականի նոյեմբերի 19-ին մեր զորքերը Ստալինգրադի ամբողջ ռազմաճա-



կատում անցան հակահարձակման և շրջապատեցին թշնամու մի խոշոր խմբավորում (330.000), կարճատև մարտերից հետո շրջապատված թշնամին ստիպված եղավ զենքը ցած դնել։ Մեր զորքերը գերի վերցրին թշնամու 91 հազար զինվոր, 2500 սպա և 24 գեներալ, պատերազմի դաշտում մնացին 147 հազար զինվոր ու սպա։

1943 թվականին տապալելով թշնամու նոր հարձակումը՝ Կուրսկի և Բելգրադի տակ, մեր զորքերը անցան հակահարձակման և իրենց ձեռքը վերցնելով ստրատեգիական նախաձեռնությունը, ֆաշիստական զորքերին ետ շպրտեցին դեպի արևմուտք և մեկը մյուսի ետևից ազատագրեցին զավթված մարզեր, երկրամասեր ու ռեսպուբլիկաներ։ 1944—1945 թվականներին թշնամուն հասցրած 10 հարվածներով կործանվեց հիտլերյան ռազմական մեքենան, ծնկի բերվեց ֆաշիստական Գերմանիան։ 1945 թվականի մայիսի 2-ին Բեռլինը հանձնվեց, իսկ մայիսի 8-ին Գերմանական հրամանատարությունը ստորագրեց Գերմանիայի անվերապահ կապիտուլյացման ակտը։ Այսպիսով պատերազմը Եվրոպայում ավարտվեց։

Սովետական Բանակը խոշոր հաղթանակ տարավ նաև ճապոնական միլիտարիստնե-



րի դեմ, ջախջախվեց Կվանտունյան մեկ միլիոնանոց բանակը, լիկվիդացվեց պատերազմի օջախը Հեռավոր Արևելքում։

Հայրենական պատերազմում մեր տարած հաղթանակը համաշխարհային պատմական մեծ նշանակություն ունեցավ։ Մեր զինված ուժերը ոչ միայն պաշտպանեցին սովետական երկրի անկախությունը, այլև աշխարհը փրկեցին ֆաշիստական ստրկությունից։

Գերմանիայի և Ճապոնիայի դեմ տարած մեր հաղթանակը նորից վառ կերպով ապացուցեց սոցիալիստական հասարակարգի անվիճելի գերազանցությունը կապիտալիստական կարգերի նկատմամբ։

Հայրենական պատերազմում իրենց անթառամ փառքով պսակեցին 28 հերոս-պանֆիլովականները, օդաչու Գաստելոն, Մատրոսովը՝ որը իր կրծքով փակեց թշնամու հրակետը, Հունան Ավետիսյանը, Օլեգ Կոշևոյը, Նելսոն Ստեփանյանը և ուրիշ շատ հերոս ռազմիկներ, որոնց անմահ կերպարները ոսկյա տառերով գրված են Հայրենական պատերազմի պատմության մեջ։

Հայրենական Մեծ պատերազմում իրենց սխրագործություններով աչքի ընկան նաև հայ ժողովրդի զավակները, որոնցից 106



հոգու շնորհվել է Սովետական Միության Հերոսի կոչում, 50 հոգու գեներալի կոչում։

Հայ ժողովուրդը իրավամբ հպարտանում է իր արժանավոր զավակներով։

Պատերազմի տարիներին հերոսաբար մարտնչեց 89-րդ կարմրադրոշ հայկական Թամանյան դիվիզիան, քաջ-սկորով գեներալ Ն. Սաֆարյանի հրամանատարությամբ։ Պանծալի դիվիզիան սովետական մյուս զորամասերի հետ միասին փայլուն հաղթանակներ տարավ Կովկասում, Ղրիմում, Օդերի ափին, և Բեռլինի համար մղած կատաղի մարտերում։

Մոտ 14 տարի է անցել երկրորդ համաշխարհային պատերազմի ավարտումից։ Մեր երկիրը ձգտել և այժմ էլ ձգտում է խաղաղության և համագործակցության ամբողջ աշխարհում։

Սոցիալիստական լագերի պետությունների հետ միասին ՍՍՌՄ-ը տանում է հետևողական, խաղաղասիրական քաղաքականություն, ամեն ջանք գործ դնելով միջազգային բոլոր վիճելի հարցերը խաղաղ ճանապարհով լուծելու համար։

Վարելով խաղաղասիրական քաղաքականություն մեր պարտիան և Սովետական կառավարությունը հոգ են տանում մեր եր-

կիրը թշնամիներից պաշտպանելու համար։ Այժմ Սովետական Բանակը զինված է ատոմային և ջրածնային զենքով, տարբեր տիպի հզոր հրթիռային և ռեակտիվ սպառազինությամբ, այդ թվում նաև գերհեռավոր գործողության հրթիռներով։ Հրաձգային զորամասերը սպառազինված են նոր առավել էֆեկտիվ զենքով։ Նրանք ունեն բարձրորակ տանկեր, հրանոթներ և ավտոմատ տիպի այլ զենքեր։ Պարտիան մեծ հոգատարություն է տածում ռազմական կադրերի ուսուցման ու դաստիարակման համար։

Սովետական ժողովուրդը իրավամբ հպարտանում է իր Զինված Ուժերով, նրանք ինչպես միշտ, այնպես էլ ապագայում պատվով կկատարեն իրենց վրա դրված մեծ պարտականությունները։

Սովետական Բանակի և Ռազմա-Ծովային նավատորմի օրը մեր երկրի աշխատավորները նշում են հայրենասիրական մեծ խանդավառության մթնոլորտում, որը առաջ է եկել հարազատ Կոմունիստական պարտիայի XXI համագումարի շնորհիվ։ Համագումարի պատմական որոշումները մեր երկրին կբերեն նոր բարգավաճում։

Սովետական մարդիկ ոգևորված մեր մեծ պարտիայի XXI համագումարի պատմական



որոշումներով, Լենինյան Կենտրոնական Կոմիտեի իմաստուն ղեկավարությամբ, հաստատ քայլերով գնում են դեպի կոմունիզմ։ Նրանք, ինչպես միշտ, այնպես էլ այժմ, վստահ են, որ իրենց խաղաղ ստեղծարար աշխատանքի պահպանությունը գտնվում է հուսալի ձեռքերում և ոչ մի ագրեսոր չի կարող անպատիժ մնալ, եթե նա փորձ անի խախտել մեր երկրի սահմանները։

Սովետական Բանակի 41-րդ տարեդարձը բարձր ցուցանիշներով են դիմավորում նաև Հայաստանի ԴՕՍԱԱՖ-ականները։ Նրանք անշեղորեն կատարելով պարտիայի XX համագումարի ծրագրային որոշումները և ՍՍՌՄ ԴՕՍԱԱՖ-ի 4-րդ համագումարի որոշումները պաշտպանական-մասսայական աշխատանքների բնագավառում ձեռք են բերել լուրջ նվաճումներ և դրանով իսկ է՛լ ավելի են աջակցում Սովետական Բանակի հզորության ամրապնդմանը։

---

# ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ 1959 ԹՎԱԿԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵՆ

Ա. ՇԵԿՈՅԱՆ
Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի Նախագահի տեղակալ

*Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի 4-րդ գումարման իններորդ սեսիան վերջերս քննարկեց և հաստատեց Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսության զարգացման 1959 թվականի Պետական պլանը և Հայկական ՍՍՌ 1959 թվականի Պետական բյուջեն։*

*1959 թվականի ժողովրդատնտեսական պլանը և Պետական բյուջեն, որը քննարկեց ու հաստատեց Գերագույն Սովետի սեսիան, նոր ազդակ կհանդիսանա էլ՛ ավելի բարձրացնելու Լենինի շքանշանակիր Հայկական ռեսպուբլիկայի արտադրողական ուժերի զարգացումը կոմունիստական ծավալուն շինարարության ներկա էտապում։*

*Անցյալ, 1958 թվականը, նշանավոր նըվաճումների տարի էր սովետական ժողո-*



*վրդի կյանքում։ Մեր երկրի աշխատավորները հաջողությամբ կատարեցին պարտիայի XX-րդ համագումարի որոշումները և հասան արդյունաբերության ու գյուղատնտեսության նոր, հզոր վերելքի, ժողովրդական մասսաների նյութական բարեկեցության և կուլտուրական անընդհատ աճի։*

*Այդ հաջողությունների մեջ վճռական նըշանակություն ունեցան արդյունաբերության ու շինարարության կառավարման վերակառուցումը և միութենական ռեսպուբլիկաների ու տեղական օրգանների իրավունքներն ընդլայնելու, կոլտնտեսային կարգի հետագա զարգացման ու ամրապնդման հետ կապված ՄՏ կայանները վերակազմելու մի շարք այլ հարցերի վերաբերյալ պարտիայի ու կառավարության որոշումների կենսագործումը։*

*Անցյալ, 1958 թվականը Սովետական Հայաստանը նշանավորեց ժողովրդատնտեսական պլանի և Պետական բյուջեի կատարման ասպարեզում ձեռք բերված նոր հաջողություններով։*

*Արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկման տարեկան պլանը կատարվեց 104,3 տոկոսով, պլանից ավելի թողարկվեց գրեթե 290 միլիոն ռուբլու արտա-*

դըրանք։ Արդյունաբերության արտադրանքը 1958 թվականին, 1957 թվականի համեմատությամբ, ավելացավ 12,2 տոկոսով։

Խոշոր հաջողություններ ձեռք բերվեցին նաև գյուղատնտեսության ասպարեզում։ Մեծ չափով աճեց գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։ Ժամկետից շուտ կատարվեց պետական պարտավորությունները։

Ռեսպուբլիկայի ժողովրդա-տնտեսական պլանի հաջող կատարման շնորհիվ, հաջողությամբ կատարվեց նաև 1958 թվականի Պետական բյուջեն ինչպես եկամուտների, նույնպես և ծախսերի գծով։ Ըստ որում բյուջետային տարին փակվեց ծախսերի նկատմամբ եկամուտների մեծ գումարի գերազանցումով։

Յոթնամյակում էլ՛ ավելի փայլուն հեռանկարներ են բացվում մեր ռեսպուբլիկայի առաջ։ Միայն 1959 թվականին արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը ավելանալու է 6,8 տոկոսով։ Նույն ժամանակաշրջանում մոլիբդենի արտադրությունն ավելանալու է 18 տոկոսով, մեքենաշինությունը՝ 15 տոկոսով, մետաղահատ հաստոցների արտադրությունը՝ 11,3 տոկոսով, կոմպրեսորներինը՝ 23, էլեկտրաշարժիչ-



ներինը՝ 43, կաբելինը՝ 15, ավտոմատացման սարքերի ու միջոցների արտադրությունը՝ 27 տոկոսով և այլն։

Խոշոր չափով աճելու է նաև սոցիալիստական գյուղատնտեսությունը, ինչպես դաշտավարության, նույնպես և անասնաբուծության արտադրությունը.

Գերագույն Սովետի սեսիան հաստատեց Սովետական Հայաստանի 1959 թվականի Պետական բյուջեն՝ ըստ եկամուտների 2 միլիարդ 853 միլիոն 100 հազար ռուբլի և ըստ ծախսերի՝ 2 միլիարդ 831 միլիոն 300 հազար ռուբլի, կամ ծախսերի նկատմամբ եկամուտների գերազանցում 21 միլիոն 800 հազար ռուբլի։

Մեր ռեսպուբլիկայի 1959 թվականի բյուջեի ընդհանուր եկամուտներից ավելի քան 2 միլիարդ 608 միլիոն ռուբլի կամ 91 տոկոսն ստացվելու է մեր տնտեսության սոցիալիստական կուտակումներից։ Այդ եկամուտներից շրջանառության հարկը կկազմի 1 միլիարդ 440 միլիոն ռուբլի, իսկ ձեռնարկությունների օգուտներից կատարվող մասհանումները ավելի քան 755 միլիոն ռուբլի։

Ժողովրդա-տնտեսական պլանի հաջող կատարումն ու նրա ֆինանսավորումը ապա-

հովելու համար մենք պետք է առաջին հերթին հոգ տանենք ապահովելու մեր տնտեսության սոցիալիստական կուտակումների պլանների անթերի կատարումը։ Այդ կապակցությամբ էլ պետք է անհրաժեշտ միջոցառումներ ձեռնարկվեն էլ՛ ավելի լավացնելու մեր գործարանների ու ֆաբրիկաների էկոնոմիկական ցուցանիշները՝ իջեցնել արտադրանքի ինքնարժեքը, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը և վերացնել ոչ արտադրողական ծախսերը։

Այս տարվա ժողովրդա-տնտեսական պլանով նախատեսվում է ինքնարժեքի իջեցում կատարել 147 միլիոն ռուբլի։ Դա հընարավոր է ոչ միայն կատարել այլ գործը լավ կազմակերպելու դեպքում գերակատարել, եթե մենք կարողանանք վերացնել անցյալում տեղի ունեցած բացերը և թերությունները։

Մեր կոլտնտեսությունները տնտեսապես ու կազմակերպչորեն ամրապնդելու շնորհիվ, որոշ չափով ավելանում է նաև կոլտնտեսությունների բյուջեին տրվող եկամուտները, որը կազմում է այս տարի 134 միլիոն ռուբլի կամ 30 միլիոն ռուբլով ավել քան անցյալ տարի է եղել։

Ինչպես անցյալ տարիներում այնպես էլ



այս տարի բնակչությունից գանձվող հարկերը բյուջեյի եկամուտներում կազմում են աննշան գումար դրա տեսակարար կշիռը 1959 թվականի բյուջեյում հավասար է միայն 6,5 տոկոսի։

Մինչդեռ կապիտալիստական երկրներում բյուջեի եկամուտների գերազանցող մասը գոյանում է բնակչությունից գանձվող հարկերից։ Այսպես, օրինակ, Ամերիկայի Միացյալ Նահանգների 1959—1960 թվականների բյուջեով բնակչությունից գանձվող միայն եկամտահարկը կազմում է ընդհանուր եկամուտների 53 տոկոսը, մինչդեռ կապիտալիստական կորպորացիաներից գանձվող հարկերը կազմում են միայն բյուջեի 28 տոկոսը։

1959 թվականի Պետական բյուջեն նախատեսում է լիովին ապահովել յոթնամյակի առաջին տարվա պլանով նախատեսված այդ բոլոր միջոցառումների ֆինանսավորումը և ապահովել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի աճման բարձր տեմպերի իրականացումը։

Պետական բյուջեի ընդհանուր ծախսերից մոտ 1 միլիարդ 305 միլիոն ռուբլի կամ 46,1 տոկոսը հատկացվում է ժողովրդական տնտեսության ֆինանսավորմանը և 1 միլ-

իարդ 357 միլիոն ռուբլի կամ ծախսերի 47,9 տոկոսը, սոցիալ-կուլտուրական միջոցառումներին, ժողովրդական լուսավորության ֆինանսավորմանը հատկացվում է 766 միլիոն ռուբլի, այսինքն մոտ 62 միլիոն ռուբլով ավել, քան անցյալ տարի, ժողովրդական առողջապահությանը՝ 307 միլիոն ռուբլի, այսինքն 28 միլիոն ռուբլի ավել անցյալ տարվանից։ Մեր աշխատավորության սոցիալական ապահովագրությանը հատկացվում է 275 միլիոն ռուբլի։

Բարձրագույն ուսումնական հաստատությունների պահպանմանը հատկացվում է ավելի քան 47 միլիոն ռուբլի։

Կուլտուր-լուսավորական հիմնարկների ցանցի՝ ակումբների, գրադարանների, կուլտուրայի տների պահպանման համար հատկացվում է 39 միլիոն ռուբլի, որը 1958 թվականի համեմատությամբ աճ է տալիս 8,7 տոկոսով։

Գիտական և գիտահետազոտական հիմնարկների ռեսպուբլիկական ցանցի ծախսերը կազմում են 152 միլիոն ռուբլի։

Բյուջեի այդ հատկացումների մեջ արտացոլվում է Սովետական պետության և Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության հետևողական



կիրառումը, որի շնորհիվ արագորեն աճում է Սովետական Միության բոլոր ժողովուրդների ձևով ազգային և բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։ 1959 թվականին նախատեսվում է իրագործել շինարարական աշխատանքների լայն ծրագիր։ Կապիտալ ներդրումների ծավալը մեր ռեսպուբլիկայում կկազմի ավելի քան մեկ միլիարդ 333 միլիոն ռուբլի։

1959 թվականին շահագործման կհանձնվեն մի շարք նոր ձեռնարկություններ։

Այնուհետև նախատեսվում է մի շարք արդյունաբերական օբյեկտների կառուցում, որոնք հնարավորություն կտան ավելացնելու թեթև, սննդի, մսի, կաթի և տեղական արդյունաբերության ձեռնարկությունների արտադրական կարողությունը և ապահովել նոր, ավելի հարուստ ասորտիմենտի թողարկումը։ Այդ միջոցները տրամադրվում են կոմունալ-բնակարանային տնտեսությանը, կուլտուր, լուսավորական, և բուժպրոֆիլակտիկ հիմնարկներին։ Միայն բնակարանային շինարարությանը հատկացված է ավելի քան 272 միլիոն ռուբլի։ Բացի դրանից բնակարանների շինարարության համար զգալի գումարներ կհատկացվեն

ձեռնարկությունների գերպլանային օգուտներից։

Այս տարի բյուջեից ավելի քան 95,8 միլիոն ռուբլի հատկացվում է մեր քաղաքների և շրջանային կենտրոնների հետագա բարեկարգման միջոցառումների համար։

Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության հետագա բարձրացման և սոցիալիստական անասնապահության մթերատվության ավելացման համար հատկացված է 112 միլիոն ռուբլի։ Ավելի քան 61 միլիոն ռուբլի հատկացվում է ջրային տնտեսության միջոցառումներին և ոռոգման գծով կատարվող շինարարությանը։ 1959 թվականին ջրովի նոր տարածությունների աճը կազմելու է ավելի քան 7000 հեկտար։

Առաջիկայում խոշոր աշխատանք պետք է կատարել շրջանառության միջոցների շրջապտույտը արագացնելու գործում։ Դա արտադրության պրոցեսում և շրջանառության մեջ ունի հսկայական ժողովրդա-տնտեսական նշանակություն և հանդիսանում է արտադրության էկոնոմիկայի կարևորագույն ցուցանիշներից մեկը։

Շրջանառու միջոցների շրջապտույտի արագացումը հնարավորություն է տալիս ա-



վելացնել ձեռնարկությունների շահութաբերությունը։

Սովետական Հայաստանի 1959 թվականի բյուջեն ցույց է տալիս, թե ինչպես մեր ռեսպուբլիկայի աշխատավորությունը եղբայրական մյուս ռեսպուբլիկաների ժողովուրդների համերաշխ ընտանիքում, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ հերոսական պայքար է մղում կոմունիզմի շինարարության յոթնամյա պլանների կատարման և գերակատարման համար, ժողովրդական տնտեսության ու կուլտուրայի հետագա զարգացման համար։

Ժողովրդա-տնտեսական պլանների և բյուջեի կատարման շահերը պահանջում են մեզանից ամենայն վճռականությամբ պայքարել տնտեսական հաշվառքի և խնայողության խստագույն ռեժիմը տնտեսական բոլոր օղակներում կիրառելու և խիստ տնտեսել ապրանքա-նյութական արժեքների ծախսումը, թույլ չտալ հումքի, էլեկտրաէներգիայի, վառելիքի օժանդակ նյութերի գերածախս, բաց թողնել էլ՛ ավելի բարձր որակով և էժան արտադրանք։

Ինչպես մեր մեծ Միության Պետական բյուջեն, այնպես էլ մեր ռեսպուբլիկայի Պետական բյուջեն վառ կերպով արտացոլում է

Սովետական կառավարության խաղաղասիրական քաղաքականությունը, որն ուղղված է խաղաղության ամրապնդման համար ամբողջ աշխարհում։

Բոլորովին այլ պատկեր են ներկայացնում կապիտալիստական երկրների բյուջեները։ Ամերիկայի Միացյալ Նահանգներում, Անգլիայում և մյուս կապիտալիստական երկրների բյուջեների մեջ խստորեն ընդգծված է նրանց ագրեսիվ, միլիտարիստական քաղաքականությունը։ Նրանց բյուջեներր ծառայում են նոր պատերազմի հրձիգների շահերին։ Հայտնի է, որ ԱՄՆ-ի 1959—1960 թվականների բյուջեի մոտ 76 տոկոսը գնալու է ռազմական ծախսերի համար։

Սովետական բյուջեն խաղաղության բյուջե է։ Նա լիովին ապահովում է կոմունիզմի ծավալուն կառուցման ժողովրդա-տնտեսության պլանով նախատեսված միջոցառումների ֆինանսավորումը։

Մեր ժողովուրդը ոչ մի ջանք չի խնայում, որպեսզի հաջողությամբ իրականացվի մեր տնտեսական կյանքի զարգացման ու հզորացման յոթնամյա պլանը, որպեսզի մեր Հայրենիքը լինի է՛լ ավելի ուժեղ և է՛լ ավելի հզոր։

---

ՕԳՏԱԳՈՐԾԵԼ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

---

# ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

(Թվեր և փաստեր)

Անցած տնտեսական տարում մեր ռեսպուբլիկայի աշխատավորները լուրջ հաջողություններ ձեռք բերեցին ժողովրդական տնտեսության, հատկապես արդյունաբերության, գյուղատնտեսության զարգացման, ինչպես նաև ժողովրդի նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի բարձրացման ուղղությամբ։

☆ Ամբողջ ռեսպուբլիկայի մասշտաբով արդյունաբերության համախառն արտադրանքի պլանը կատարվել է 104 տոկոսով, իսկ Երևան քաղաքինը առանձին վերցրած՝ 105 տոկոսով։

☆ Ռեսպուբլիկայի գունավոր մետալուրգիայի պլանը՝ 1958 թվականին, 1957 թվականի համեմատությամբ, կատարվել է 114 տոկոսով, էներգետիկ արդյունաբերությանը՝ 106, մեքենաշինությանը և մետաղամշակմանը՝ 122, քիմիական արդյունաբերությանը՝ 123, շինանյութերի արդյունաբերությանը՝ 161 տոկոսով և այլն։

★ 1958 թվականին Հայաստանում արտադրվել է մինչև 100 կիլովատտանոց 27.228 գեներատոր, որը 1957 թվականի համեմատությամբ կազմում է 124 տոկոս, մինչև 100 կիլովատտանոց էլեկտրաշարժիչներ՝ 190 հազար 925 հատ կամ 117 տոկոս, շարժական էլեկտրակայաններ՝ 16.434 հատ կամ 116 տոկոս, կենտրոնախույս պոմպեր՝ 33.765 հատ կամ 126 տոկոս, մեխանիկական մամլիչներ՝ 424 հատ կամ 662 տոկոս, հավաքովի երկաթբետոնե կոնստրուկցիաներ՝ 81.470 խորանարդ մետր կամ 187 տոկոս։

☆ Արտադրվել է 3 միլիոն 623 հազար մետր բրդե գործվածքներ կամ 1957 թվականի համեմատությամբ 122 տոկոս, 6 միլիոն 623 հազար մետր մետաքսե գործվածքներ, կամ 106 տոկոս, 4 միլիոն 618 հազար զույգ կաշվե կոշիկներ կամ 121 տոկոս։

☆ Սննդամթերքներից արտադրվել է. շաքարավազ՝ 11.632 տոննա կամ 124 տոկոս, պահածոներ՝ 87 միլիոն 95 հազար պայմանական տուփ կամ 117 տոկոս, անարատ կաթնամթերք՝ 17.701 տոննա կամ 112 տոկոս, պանիր՝ (ժողտնտխորհի արդյունաբերություն) 4.235 տոննա կամ 121 տոկոս։

☆ Աշխատանքի արտադրողականությունը ռեսպուբլիկայի մասշտաբով 1958 թվականին, 1957 թվականի համեմատությամբ, աճել է 6 տոկոսով, ժողտնտխորհի ձեռնարկությունների գծով՝ 7,7 տոկոսով։

★ Զգալի են հաջողությունները նաև գյուղատն-



տեսության զարգացման բնագավառում։ 1958 թվականին բոլոր կատեգորիաների տնտեսություններում, 1957 թվականի համեմատությամբ, բամբակի համախառը բերքը ավելացավ 25 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 4 տոկոսով, ծխախոտինը՝ 2, կարտոֆիլինը՝ 9, բանջարեղենինը՝ 6 տոկոսով։

☆ Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները 1958 թվականի խաղողի այգիներ գցելու պլանը կատարել են 109 տոկոսով, սովխոզները՝ 101 տոկոսով։

☆ 1958 թվականին, 1957 թվականի համեմատությամբ, բոլոր կատեգորիաների տնտեսություններում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացել է 4 տոկոսով, այդ թվում կովերինը՝ 12, ոչխարներինը և այծերինը՝ 7, խոզերինը՝ 4 տոկոսով։

☆ Մսի արտադրությունը անցյալ տարվա համեմատությամբ, ավելացել է 22 տոկոսով, կաթինը՝ 14, բրդինը՝ 7, ձվինը՝ 6 տոկոսով։

☆ 100 հեկտար հողատարածության դիմաց արտադրվել է 26 ցենտներ միս, (սպանդանոցային քաշով), 231 ցենտներ կաթ, 251 կիլոգրամ բուրդ և հացահատիկային կուլտուրաների 100 հեկտար ցանքատարածության դիմաց՝ 45,5 հազար ձու։

☆ 1958 թվականին, 1957 թվականի համեմատությամբ, պետությանը հանձնվել է 29 տոկոսով ավելի բանջարեղեն, 26 տոկոսով ավելի բամբակ, 4 տոկոսով ավելի շաքարի ճակնդեղ, 41 տոկոսով ավելի պտուղներ։

★ Անդրկովկասյան երկաթուղու Երևանի բաժանմունքը բեռների ընդհանուր բեռնման պլանը կատարել է 113 տոկոսով։

☆ Հայկական ՍՍՌ Ավտոմոբիլային տրանսպորտի մինիստրության ընդհանուր օգտագործման ավտոմոբիլային տրանսպորտը բեռնաշրջանառության պլանը կատարել է 106 տոկոսով, բեռների փոխադրման պլանը՝ 107 տոկոսով։

☆ Երկրի տնտեսության զարգացման հետ միասին բարձրանում է նաև ժողովրդի նյութական բարեկեցությունը։ Մեկ տարվա ընթացքում բանվորների թիվը ավելացել է 26 հազարով և ներկայումս կազմում է 357 հազար։

☆ 1958 թվականին աշխատանքային ռեզերվների սիստեմի ուսումնարաններն ու դպրոցները ավարտել են 2.159 մարդ, որոնցից 765-ը գյուղատնտեսության մեխանիզատորներ։

☆ Անցյալ տարի բնակչությանը վճարվել են 327 միլիոն ռուբլու միայն կենսաթոշակներ։

☆ Ապրանքաշրջանառության պլանը կատարվել է 106.7 տոկոսով, այդ թվում մանրածախինը՝ 106,8 տոկոսով, հասարակական սննդինը՝ 106,1 տոկոսով։

☆ 1958 թվականին բնակարանային տարածության աճը, 1957 թվականի համեմատությամբ, ավելացավ 60 տոկոսով։ Բացի այդ, կոլտնտեսականները և գյուղական ինտելիգենցիան կառուցել են 10.400 տուն՝ 1957 թվականի 9 հազարի դիմաց։



☆ Ներկայումս ռեսպուբլիկայի ուսուցման բոլոր ձևերում սովորում են ավելի քան 300 հազար մարդ։ Մեկ տարվա ընթացքում բացվել են 10 նոր միջնակարգ դպրոցներ։

☆ Անցած տարի առանց արտադրությունից կտրվելու բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում սովորում էր ավելի քան 13 հազար մարդ։

☆ 1958 թվականին բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունները ավարտել են ավելի քան 8 հազար մասնագետներ, 1957 թվականի 7,5 հազարի դիմաց։

☆ 1958 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ կինոսարքերի թիվը ավելացավ 9 միավորով և հասավ 395-ի։ Կինոսեանսների հաճախողների թիվը կազմեց 11,9 միլիոն մարդ, որը 1957 թվականի համեմատությամբ ավելացել է 170 հազարով։

☆ Անցյալ տարի հիվանդանոցներում մահճակալների թիվը գերազանցեց 11 հազարից, մշտական մանկամսուրներում տեղերի թիվը հասավ 6 հազարի, սանատորիաներում մահճակալների թիվը՝ 2.900-ի։ Բժիշկների թիվը (առանց ատամնաբույժների) տարվերջին կազմեց 3.800։

☆ Անցած ամռանը ավելի քան 45 հազար երեխաներ և դեռահասներ հանգստացան պիոներական ճամբարներում, մանկական սանատորիաներում և ամառանոցային այլ վայրերում։

---

# ԱՃՈՒՄ Է ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԶՈՐՈՒԹՅՈՒՆԸ

(Թվեր և փաստեր)

*Եթե ներկայումս սոցիալիզմի երկրները տալիս են ամբողջ աշխարհի արդյունաբերական արտադրանքի շուրջ մեկ երրորդը, ապա 1965 թվականին այդ երկրներն արտադրելու են ամբողջ համաշխարհային արդյունաբերական արտադրանքի կեսից ավելին։ Այսպիսով, պատմական կարճ ժամանակամիջոցում սոցիալիզմի համաշխարհային սիստեմը բացարձակ առավելություն ձեռք կբերի կապիտալիստական սիստեմի նկատմամբ նյութական արտադրության ասպարեզում։*

*1965 թվականին արդյունաբերական արտադրանքի մի քանի կարևորագույն տեսակների արտադրության բացարձակ մակարդակով Սովետական Միությունը կգերազանցի, իսկ որոշ տեսակների արտադրությամբ կմոտենա ԱՄՆ-ի արդյունաբերական արտադրանքի ժամանակակից մակարդակին։*



*Այդ ժամկետում գյուղատնտեսության կարևորագույն մթերքների՝ ամբողջությամբ վերցրած և մեկ շնչին ընկնող արտադրությունը կգերազանցի ԱՄՆ-ի ժամանակակից մակարդակը։*

*Համաշխարհային սոցիալիստական սիստեմի տնտեսական հզորության ամրապնդման գործում տարեցտարի ավելի ու ավելի մեծ լումա են մտցնում Ասիայի և Եվրոպայի ժողովրդա-դեմոկրատական պետությունները։ Կապիտալիզմի համար անմատչելի արագ տեմպերով է զարգանում նրանց ժողովրդական տնտեսությունը։*

☆ *1958 թվականին իր զարգացման գործում չտեսնված թռիչք կատարեց* Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի էկոնոմիկան։ *Ըստ նախնական տվյալների 1958 թվականին ՉԺՌ-ի արդյունաբերության և գյուղատնտեսության համախառն արտադրանքի աճը, 1957 թվականի համեմատությամբ, կազմում է շուրջ 70 տոկոս։*

*Չինաստանում առանձնապես բարձր տեմպերով են զարգանում ծանր արդյունաբերության կարևորագույն ճյուղերը, որոնք վճռական դեր են խաղում երկրի ինդուստրացման գործում։ 1958 թվականին ՉԺՌ-ում արտադրված է մոտավորապես 11 միլիոն*

տոննա պողպատ, այսինքն կրկնակի անգամ ավելի, քան 1957 թվականին։ Դա հնարավոր դարձավ մետաղի արտադրությունն ավելացնելու համար մղվող համաժողովրդական շարժման շնորհիվ, որը երկրում ծավալվեց Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ։ Հայրենասիրական շարժմանը մասնակցեց շուրջ 60 միլիոն չին աշխատավոր։ Նրանց ձեռքերով երկրում կառուցվեց 1 միլիոնից ավելի չուգունի և պողպատահալ մանր վառարաններ, որոնք այժմ դարձել են չինական սև մետալուրգիայի կարևոր բաղկացուցիչ մասը։ Սրա հետ մեկտեղ ՉԺՌ-ում լայն մասշտաբներով է ընթանում ժամանակակից դոմնային և պողպատահալ վառարանների շինարարությունը, նորագույն տեխնիկայով սարքավորված խոշոր մետալուրգիական կոմբինատների կառուցումը։

1958 թվականին Չինաստանում արդյունահանվել է մոտավորապես 270 միլիոն տոննա ածուխ, այսինքն՝ երկուսից ավելի անգամ, ավելի քան նախորդ տարում։ 1958 թվականին վիթխարի թռիչք է կատարել չինական մեքենաշինությունը։ Մեկ տարվա ընթացքում երկրում արտադրված է մոտավորապես 90 հազար մետաղահատ հաստոց,



1957 թվականի համեմատությամբ ավելի քան երեք անգամ։ Ածխի արդյունահանմամբ և հաստոցների արտադրությամբ 1958 թվականին Չինաստանը հասավ և անցավ աշխարհի հնագույն ինդուստրիալ երկրին՝ Անգլիային։

Չինաստանի Կոմունիստական պարտիան խնդիր է առաջ քաշել՝ առաջիկա 15 տարիների ընթացքում արդյունաբերական արտադրանքի կարևորագույն տեսակների արտադրությամբ հասնել Անգլիային։ Սակայն Չինաստանի ինդուստրիալ զարգացման չըտեսնված բարձր տեմպերը, որոնք ձեռք են բերված վերջին տարում, տալիս են բոլոր հիմքերը կարծելու, որ այդ վիթխարի խնդիրը կկատարվի ավելի կարճ ժամկետում։

1958 թվականին ՉԺՌ-ում հավաքվել է հարուստ բերք։ Հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը կազմել է շուրջ 375 միլիոն տոննա, որը գրեթե 2 անգամ ավելի է 1957 թվականի բերքից։ Հավաքված է 3,35 միլիոն տոննա բամբակ, այսինքն՝ նախորդ տարվա համեմատությամբ ավելի, քան 2 անգամ։ Բամբակի համախառն բերքի և միջին բերքատվության գծով Չինաստանը գերազանցել է Ամերիկայի Միացյալ Նահանգներին։

Չինաստանի Կոմունիստական պարտիայի 6-րդ պլենումը, որ կայացավ 1958 թվականի նոյեմբեր-դեկտեմբերին, նախագծեց ՉԺՌ-ի ժողովրդական տնտեսության զարգացման գլխավոր ցուցանիշները 1959 թվականի համար։ Նոր տարվա ընթացքում երկիրը պետք է պողպատի արտադրությունը հասցնի 18 միլիոն տոննայի, ածխի արդյունահանումը՝ մոտավորապես 380 միլիոն տոննայի, հացահատիկի համախառն բերքը ավելացնի մոտավորապես մինչև 525 միլիոն տոննայի, և բամբակինը՝ մինչև 5 միլիոն տոննայի։

☆Չեխոսլովակյան Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը 1958 թվականի առաջին երեք եռամսյակների ընթացքում արտադրանքի թողարկումը նախորդ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ ավելացրել է 11,7 տոկոսով։ Այսպիսով, ժողովրդա-դեմոկրատական Չեխոսլովակիան արդյունաբերական տեսակետից լինելով բարձր զարգացած երկիր, շարունակում է առաջվա նման արագ թափով զարգացնել իր ինդուստրիան։ Ներկայումս Չեխոսլովակիան բնակչության մեկ շնչին ընկնող ածխի արդյունահանումով առաջ է անցել Բելգիայից, ԳՖՌ-ից, Ֆրանսիայից,



ԱՄՆ-ից, իսկ մեկ շնչին ընկնող էլեկտրաէներգիայի և պողպատի արտադրությամբ՝ Ֆրանսիայից, ցեմենտի արտադրությամբ՝ Անգլիայից։

Չեխոսլովակիայի կոմունիստական պարտիայի 11-րդ համագումարը նախագծել է 1965 թվականին երկրի արդյունաբերական արտադրանքը ավելացնել 90—95 տոկոսով։

☆ Լեհական Ժողովրդական Ռեսպուբլիկայում ըստ նախնական տվյալների, սոցիալիստական արդյունաբերության համախառն արտադրանքը 1958 թվականին աճել է գրեթե 10 տոկոսով։ Լեհական միացյալ բանվորական պարտիայի Կենտկոմի 12-րդ պլենումը 1959—1965 թվականներին ԼԺՌ-ի զարգացման վերաբերյալ ընդունել է դիրեկտիվներ, որոնք պետք է քննարկի և հաստատի ԼՄԲՊ-ի 3-րդ համագումարը, 1959 թվականի մարտին։

Դիրեկտիվները նախատեսում են, որ 1965 թվականին ռեսպուբլիկայում արդյունաբերական արտադրանքը, 1958 թվականի համեմատությամբ, կաճի մոտավորապես 80 տոկոսով։

☆ Ռումինական Ժողովրդական Ռեսպուբլիկայում ըստ նախնական տվյալների արդյունաբերական արտադրանքի հա-

մախառն ծավալը 1958 թվականին, 1957 թվականի մակարդակը գերազանցել է 9,5 տոկոսով: Այժմ ռումինական արդյունաբերությունը երեք ամսում արտադրում է նույնքան արտադրանք, որքան ամբողջ 1938 թվականի ընթացքում:

☆ Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան 1958 թվականի 9 ամիսների ընթացքում արդյունաբերական արտադրանքի ծավալը, 1957 թվականի նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, ավելացրել է 11,2 տոկոսով: Գյուղատնտեսական արտադրանք ստացված է 7,9 տոկոսով ավելի, քան նախորդ տարում:

☆ Հունգարական Ժողովրդական Ռեսպուբլիկայում ըստ 1958 թվականի 11 ամիսների տվյալների, պետական արդյունաբերության միջին օրական արտադրանքը (չըհաշված սեզոնային բնույթ կրող սննդի արդյունաբերությունը) 13 տոկոսով գերազանցել է 1957 թվականի 11 ամիսների միջին-օրական մակարդակը: 1958 թվականին երկրում զգալիորեն ավելի շատ ածուխ է արդյունահանվել, էլեկտրաէներգիա արտադրվել, ձուլվել չուգուն, պողպատ և ալյումին, թողարկվել հաստոցներ և այլ



սարքավորումներ, ժողովրդական սպառման ապրանքներ, քան նախորդ տարում:

☆ Բուլղարական Ժողովրդական Ռեսպուբլիկայում 1958 թվականի 9 ամիսների ընթացքում գերակատարվել է արդյունաբերական արտադրանքի թողարկման պլանը: Երկիրը ստացել է ավելի շատ ածուխ, էլեկտրաէներգիա, պողպատ, կապար, ծծմբաթթու, բամբակյա և բրդյա կտոր, կոշիկ, միս, մրգերի պահածոներ և այլ արտադրանք, քան նախորդ տարվա համապատասխան ժամանակամիջոցում: Երկրում լայնորեն ծավալվել է համաժողովրդական շարժում սոցիալիստական շինարարության տեմպերն արագացնելու, երրորդ հնգամյակը 3—4 տարում կատարելու համար:

☆ Ալբանիայի Ժողովրդական Ռեսպուբլիկայում 1958 թվականի վերջին արդյունաբերության համախառն արտադրանքը 1938 թվականի համեմատությամբ աճել է 17 անգամ: 1958 թ. միայն 9 ամիսների ընթացքում Ալբանիայում արդյունահանվել է ավելի շատ, քան ամբողջ 1938 թվականի ընթացքում. նավթ՝ գրեթե 2 անգամ, ածուխ՝ 48, քրոմի հանքաքար՝ 21 անգամ: Տասն անգամ ավելացվել է էլեկտրաէներ-

գիայի արտադրանքը, 45 անգամ բամբակյա գործվածքները։

☆ Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկան ըստ 1958 թվականի 9 ամիսների տվյալների, արդյունաբերական արտադրանքի թողարկումն ավելացրել է 34 տոկոսով։

Չնայած երաշտին, հավաքված է 700 հազար տոննայով ավելի հացահատիկ, քան 1957 թվականին, մրգի բերքը ավելացել է 14 տոկոսով, բամբակինը՝ մոտավորապես 11 անգամ։ Կորեայի Աշխատանքային պարտիան և ԿԺԴՌ-ի կառավարությունը երկրի առջև խնդիր են դրել հետագայում է՛լ ավելի զարգացնել ժողովրդական տնտեսությունը։ Առաջիկա 6—7 տարում. ածխի արդյունահանումը պետք է աճի գրեթե 4 անգամ, ձուլումը՝ ավելի քան 8 անգամ, էլեկտրաէներգիայի արտադրանքը՝ գրեթե 3 անգամ։ Վերջին ժամանակներս ռեսպուբլիկայում ծավալվում է համաժողովրդական շարժում՝ այդ ծրագիրը զգալիորեն արագ կատարելու համար։

☆ Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկան ազգային արդյունաբերության ընտեղծման գործում հաջող քայլեր է անում։



Վերջին երեք տարիների ընթացքում սոցիալիստական երկրների եղբայրական օգնությամբ կառուցվել է 38 նոր գործարան ու ֆաբրիկա։ 1958 թվականին շարք է մտել ՎԴՌ-ի մեքենաշինական արդյունաբերության առաջնեկը՝ Հանոյի մեխանիկական գործարանը։ Էկոնոմիկայի զարգացման և սոցիալիստական վերակառուցման 1958—1960 թվականների եռամյա պլանով ՎԴՌ-ի արդյունաբերության և գյուղատնտեսության համախառն արտադրանքը, 1957 թվականի համեմատությամբ, աճելու է 78 տոկոսով, այդ թվում արդյունաբերական արտադրանքը կրկնակի չափով։ Երեք տարվա ընթացքում ռեսպուբլիկայում կկառուցվի կամ կսկսվի 96 արդյունաբերական ձեռնարկությունների շինարարությունը, այդ թվում՝ 56 ձեռնարկություն արտադրության միջոցների արտադրության համար։

1958 թվականին, չնայած կլիմայական անբարենպաստ պայմաններին, ՎԴՌ-ում, ըստ նախնական տվյալների, հավաքված է 4,5 միլիոն տոննա բրինձ։ Սա 2,5 անգամ գերազանցում է բրինձի տարեկան բերքը, որ հավաքվել է Հյուսիսային Վյետնամում մինչ պատերազմը։





☆ 1958 թվականին ժողովրդական տնտեսության զարգացման գործում նոր հաջողությունների են հասել Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկայի աշխատավորները։ ՄԺՌ-ի պետական և կոոպերատիվ արդյունաբերական ձեռնարկությունները գերակատարել են 1958 թվականի երեք եռամսյակների պլանը։ Ռեսպուբլիկայում անասունների գլխաքանակը ավելացել է 103 հազար գլխով, իսկ հացահատիկի բերքը՝ նախորդ տարվա համեմատությամբ 55,5 տոկոսով։

---

## СОДЕРЖАНИЕ



---


Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ